ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ — «ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ — № 9 — 1969

ՍՈՒՐԵՆ ՔՈԼԱՆՋՅԱՆ

# ՀԱՄԱՌՈՏ ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԱՑ ԳԵՌԼԱ ՀԱՅԱՔԱՂԱՔԻ[1]

*Այս համառոտ ձեռագրացուցակը հիմնականում կազմվել է Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության Տրանսիլվանիայի նահանգի Գեռլա Հայաքաղաքը կատարած մեր երկրորդ այցելության ժամանակ՝ 1960 թ. դեկտեմբերի 18—21-ին։*

*Ձեռագրացուցակում ներկայացված են յուրաքանչյուր ձեռագրի արտաքին համառոտ նկարագրությունը և այդ ձեռագրերում եղած բոլոր հիշատակարաններն ու հիշատակագրությունները։*

*Ձեռագրերի մեր համարակալումը պայմանական է. առաջնորդվել ենք ձեռագրերի ընդօրինակման ժամանակագրական հաջորդականությամբ. փակագծերում գտնվող համարներն արձանագրված են ձեռագրերին փակցված պիտակների վրա, և, հավանաբար, Գեռլայի Ս. Երրորդության մայր տաճարի մատենադարանի հին համարներն են։ Մենք չկարողացանք այդ հին համարները դասավորման համար հիմք ընդունել, որովհետև նրանց միջից շատ պակասներ կային։*

*Ժամանակի սղության պատճառով չենք կարողացել բոլոր ձեռագրերի թերթերը հաշվել և կամ նրանց բովանդակությունը նկարագրել, ուստի և բերված հիշատակարանների տողերի միջև չենք կարողացել նշել նրանց թերթահամարները և կամ հնարավորություն չենք ունեցել հաճախ նրանց բովանդակության վրա ծանրանալու։ Անցյալում մի շարք ձեռագրեր էջակալվել են, որոնք և ցույց ենք տվել։*

*Ինչպես խորագրերի, այնպես էլ հիշատակարանների հրատարակության ժամանակ բաց ենք արել բոլոր համառոտագրությունները։*

*Ձեռագրացուցակի 1—97 համարների տակ նկարագրված ձեռագրերը այժմ պահվում են Գեռլայի պատմական շրջանային թանգարանում (*Muzeul Istoric Regional Gherla*)։ Իսկ 98—115 համարների տակ գրանցված ձեռագրերը տեսել ենք 1948 թ. Գեռլա կատարած մեր առաջին այցելության ընթացքում՝ Հայաքաղաքի Ս. Երրորդության մայր տաճարի վերնահարկում, հայ աղջիկների որբանոցում, ժողովրդապետարանում և հայ թեմի առաջնորդ, այժմ հանգուցյալ, Հ. Զայթան Լենգելյանի մոտ։*

*Ներկայումս Գեռլայի պատմական շրջանային թանգարանում պահվող ձեռագրերը երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին տեղափոխվել*

[1] Գեռլա Հայաքաղաքի պատմության, այնտեղ պահվող ձեռագրերի հավաքման և նրանց ներկայացրած արժեքի մասին տեսնել հեղինակի «Գեռլա Հայաքաղաքը և նրա հայերեն ձեռագրերի ժողովածուն» ուսումնասիրությունը, «Բանբեր Մատենադարանի», № 6, 1962, էջ 499—531։

էին Բուդապեշտ, այդ պատճառով էլ 1948 թ. մեր առաջին այցելության ընթացքում հնարավոր չէր եղել տեսնել դրանք:

Անցյալում Ս. Բ.-ն (իմա՝ Գր. Գովրիկյան), նպատակ ունենալով հրատարակել Գեռլայի ձեռագրերի ցուցակը, լույս է ընծայել միայն 7 ձեռագրերի նկարագրությունը: Այդ ձեռագրերից երկուսն այժմ կորած են, դրանք են. 1) Շարակնոց, արտագրված ԺԶ-ԺԷ դարերում և 2) Սպասաւորութիւն պատարագի, գրված Հռոմում 1713 թ., «Ի վանքն Հայոց ընդ հովանեաւ Ս. Մարիամայ Եգիպտացւոյն», գլխավոր գրիչ՝ Տէր Յարութիւն Զօփլի[2]:

Այսպիսով, սույն ձեռագրացուցակում նկարագրված 115 գրչագրերից միայն 5 են նկարագրվել հիշյալ ցուցակի ապագրված մասում[3]:

Ներկա ցուցակում բացառության կարգով նկարագրված են նաև երկու այլալեզու (լատիներեն և հունգարերեն) ձեռագրեր, այն պարզ պատճառով, որ նրանք պատկանում են գեռլացի բազմարդյուն գրագետ ու գործիչ Զաքարիա Գաբրուշյանի գրչին և հեղինակությանը:

Ռումինական և հունգարական գիտական շրջանակներում վերջին ժամանակներս մեծ հետաքրքրություն է առաջացել Գեռլայի հայերեն ձեռագրերի ժողովածուի նկատմամբ: Այդ ձեռագրերում կան նաև ուշագրավ նյութեր, որոնք նոր լույս են սփռում հայ-ռումինական և հայ-հունգարական դարավոր բարեկամության պատմության վրա:

Գեռլայում բնակվող ռումինացի բանաստեղծ Յոն Ալեքսանդր Պալեակուն ռումինական հանդեսներում հրապարակած իր մի շարք հոդվածներում կանգ է առել նաև Գեռլայում պահվող մի քանի ձեռագրերի արժեքի վրա: Ռումինացի գիտնականը՝ շարունակելով հայագիտության բնագավառում իր կատարած օգտաշատ որոնումները, ռումինական ակադեմիայի Կլուժի մասնաճյուղի նիստում (4 ապրիլի 1963 թ.) հանդես է եկել «Գեռլայի հայերեն հնագույն ձեռագրերի մեծ նշանակությունը» խորագիրը կրող հաղորդումով: Այդ զեկուցման առթիվ մեծ տպավորության տակ Կլուժի ակադեմիայի մասնաճյուղի գիտական աշխատողները գիտական այցելություն են կատարել դեպի Գեռլա և անձամբ ծանոթացել են պահված հայերեն ձեռագրերին: Միաժամանակ նրանք ցանկություն են հայտնել հիշյալ ձեռագրերի պահպանության գործը ամուր հիմքերի վրա դնելու նպատակով տեղափոխել դրանք Գեռլայի պատմական

---

2 «Հանդէս ամսօրեայ», 1914, Վիեննա, էջ 667, 670—674:

3 Այժմ Վիեննայի Մխիթարյան Մատենադարանում է պահվում Հ. Գր. Գովրիկյանի և Հ. Գ. Ձերհատյանի կազմած Գեռլայի ձեռագրացուցակը, ուր նկարագրված են միայն 52 գրչագրեր և որոնցից, ինչպես նշեցինք, 7 ձեռագրի նկարագրություն հրատարակվել է «Հանդէս ամսօրեայ»-ում: Սույն թերի անտիպ ցուցակը, ըստ մեր ստացած հավաստի տեղեկության՝ կարոտ է մի շարք լրացումների:

Վերոհիշյալ ցուցակի անտիպ մասում նկարագրված 45 գրչագրերից երեքը այժմ պահվում են Մաշտոցյան Մատենադարանում, դրանց մասին խոսել ենք մեր նախորդ հոդվածում:

Նշված ցուցակի անտիպ մասի հետագա հրատարակումը, անշուշտ, կնպաստի Գեռլայում մինչև 1914 թ. (իմա՝ մինչև Գովրիկյանի և Ձերհատյանի ցուցակագրումը) պահպանված ձեռագրերի մասին մեր ունեցած ծանոթությունների ամբողջացմանը: Եթե ցուցակի հրատարակված մասում նկարագրված միայն 7 գրչագրերից այժմ պակասում է 2-ը, ապա պետք է կարծել, որ անտիպ մասի հրատարակման դեպքում հայտնի կարող են դառնալ հավանաբար ավելի մեծ թվով այժմ կորած ձեռագրեր:

Հիշյալ անտիպ ձեռագրացուցակի վերաբերյալ սույն տեղեկությունները սիրահոժար կերպով տրամադրել է մեզ բազմավաստակ բանասեր, այժմ հանգուցյալ, Հ. Հ. Ոսկյանը:

շրջանային թանգարանից (ուր ներկայումս նրանք պահվում են) Կլուժի ռումինական ակադեմիայի մատենադարանը, ուր և մեր դարասկզբից սկսած պահվում են նաև Տրանսիլվանիայի հայոց պատմական մյուս հայաքաղաքից՝ Եղիսաբեթուպոլսից (այժմ Դումբրըվենի) ժառանգություն մնացած շուրջ 60 հայերեն ձեռագրեր։

Եթե առաջին հայացքից այդ տեղափոխումը նվազ ցանկալի թվա (քանի որ մոտ երեք հարյուր տարի շարունակ Գեռլայում է պահվել Մոլդովայից տեղափոխված այդ ձեռագրերի մի մասը), ապա շատ ավելի նպատակահարմար է այդ ձեռագրերը Կլուժի ռումինական ակադեմիայի մատենադարան տեղափոխելը՝ նրանց ինչպես պահպանման, այնպես էլ ուսումնասիրման տեսակետից։ Դա հնարավորություն կընձեռի նաև անհրաժեշտության դեպքում նրանցից նկարահանումներ կատարել։

Հիշյալ ձեռագրերը այսօր էլ գտնվում են Գեռլա Հայաքաղաքի թանգարանում։



Այժմ, երբ սպագրության ենք հանձնում սույն ձեռագրացուցակը, սրբազան պարտք ենք համարում մեր խորին հարգանքը մատուցելու Գեռլա-Հայաքաղաքի հին սերնդի ամենավերջին հայախոս ներկայացուցչի՝ Հ. Զոլթան Լենգյելյանի (1908—1964 թթ.) հիշատակին։ Նա ոչ միայն Տրանսիլվանիայի հայոց վերջին առաջնորդն էր, այլև մեսրոպյան լեզվի ջերմեռանդ տարածողը, բազմակողմանի զարգացած ու զգայուն սրտի տեր և բացառիկ հմայք ունեցող մի անձնավորություն։ Նա էր, որ այնքան մեծ զուրգուրանքով կարողացել էր պահպանել հնավուրց գաղութի դարավոր ժառանգությունը հանդիսացող հայերեն ձեռագրերը և մայր տաճարի վերջին մեծ հրդեհի ժամանակ անձնազոհությամբ ոչնչացումից փրկել այդ գանձերը։

Ինչպես 1948 թ., այնպես էլ 1960 թ. Գեռլայում մեր կատարած այցելությունների ժամանակ Հ. Զոլթան Լենգյելյանը մեծ հյուրասիրությամբ մեզ համար հնարավոր բոլոր միջոցները ստեղծեց, որպեսզի մոռացության մատնված այդ ձեռագրական հավաքածուն ցուցակագրման միջոցով մատչելի դառնա հայագիտությանը։ Սակայն վրա հասած նրա վաղաժամ մահը (1964 թ. հոկտեմբերի 5) թույլ չտվեց նրան տեսնելու իր կողմից երկյուղածությամբ պահպանված ձեռագրերի ներկա ցուցակի հրատարակումը, որին այնքան տենչացել էր իր կենդանության օրոք։

1

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Տարօնի ս. Ղազար վանք* *[Չ]ԾԵ—1306 թ.*

Գրիչ՝ *Յոհաննէս*: Ստացող՝ *Կարապետ*, ապա՝ *Յուսիկ քահանայ*: էջ 614: Թուղթ: 16,5×13: Բոլորգիր: Վիճակ՝ ձեռագրի թերթերի մի մասի ներքևի կեսը ոչնչացած է ու վերանորոգված սպիտակ թղթով. այդ պատճառով Ավետարանից բազմաթիվ էջեր, ինչպես նաև գրչի հիշատակարանի մի մասը չի պահպանվել: Երկսյուն: Մանրանկարչություն՝ կիսախորան, լուսանցազարդ և զարդագրեր (բուսական մոտիվներ և մարդագիր):

Հիշատակարան

Գրչի

Ա

*Քրիստոս աստուած, քո անճառելի խոնարհութեամբդ և քո սուրբ տնօրէնութեամբդ և քո սուրբ Աւետարանիս բարեխաւսութեամբն ողորմեա ստացողի սորա Կարապետին ///*

Բ

*Փա՜ռք... Ըստ նմին ուրեմնակի և սրբասէր քահանայն և աստուածահաճոյ կրաւնա[ւորն Յով]սէփ ցա[նկացաւ] /// հասուցանել զնա ի փափաք բաղձանաց իւրոց, իսկ մեր անընդունակ գոլով իմաստից և ախմար յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ի սիրոյ նորա և ըստ կարի մերում զոր /// ուր ծնեալք ի Թուականիս Հայոց [Չ]ԾԵ, ի գաւառիս [Տ]արաւնոյ, ի հռչակաւոր ուխտիս և ի հրեշտակացոյց մենաստանիս Ղազարու վանք կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Ես[արկեաց] ///*

*///վանից սուրբ Աբրահամու։ Ու յայսմ ամի եւ հրամանն սիրծ չինքնակալըն ազգին նետողաց, որոյ անուն Խարբանդայ ժամանի /// և սև կարկտան մի յաշոյ ուսին վերա կարել և առնել պհրավարատկս անաւրէն ցեղամբք նորա յարձակեցան ի վերա աշխարհիս, որ ընդ ձեռամբ նո[րա]/// էր և ի գրոհ///. Արդ, որք ազդիք ի սմանէ կամ զաղափարէք կամ հանդիպիք սմա, յիշեսջիք աղաւթիւք ի յառաջ աստուծոյ քահանայ զՅուսիկն, որ ստացաւ զսա ի հալալ ///*

*Ընդ նմին և զծաղկողն գրիչս Յոհաննէս բարի յիշման արժանի արարէք և խոշորութեան և սխալանաց սորա անմեղադիր լերուք, զի կար մեր այս է ///*

2 (13)

## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ, ՃԱՇՈՑ

*Կիպրոս, ի Մաղուսայ* *ՉԾԹ—ՉԿԱ 1310—1312 թթ.*

Գրիչ՝ *Ստեփանոս Գոյներերիցանց*: Ոսկով զարդարող՝ *Սարգիս քահանայ (Պիծակ՞)*: Ստացող՝ *Պարոն Ալիծ տիկին, դուստր պարոն Հեթումի*: Վերաին

կազմողներ՝ *Սիրապիոն և Սարգիս (1626 թ., Սուչավա):* Վերստին կազմել տվել՝ *Ղուկաս քահանա: 406 թերթ: Մագաղաթ: 19,3×12,9: Երկսյուն:* Տողեր՝ *16:* Մանրանկարչություն՝ *երկու կիսախորաններ, լուսանցազարդեր և զարդագրեր (բուսական մոտիվներ և թռչնագիր):*

## Հիշատակարան

### Ա

Գրչի

*Փա՛ռք... Գրեցաւ պրակք սուրբ Աւետարանիս, Կաթողիկէիս հանգերձ, հրամանաւ աստուածասէր և բարեպաշտ պարոնին տիկին Ալիծին, մայրն թագաւորացն Հայոց, ի մխիթարութիւն կենաց իւրոց և ի յիշատակութիւն հոգւոյ իւրոյ, ի ձեռն ինձ նուաստիս Ստ[եփանոսի] Գոյներիցեանց: Արդ, յերկիր անկեալ աղաչեմ ըհանդիպողացդ՝ յիշել զարժանին յիշատակի՝ զաստուածասէրն և զբարեպաշտուհին, հանգերձ ամենայն նախնեօքն իւրովք եւ ծնողօքն, այլ և զպատատողեալ և զբազմամեղ գրչիս, և Աստուած առհասարակ ձեզ և մեզ ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն:*

*Ի թւ. ՉԾԹ (1310) գրեցաւ, ի բազմաթշուառ ժամանակի, որոց տարակուսելոցս այց արասցէ մարդասէրն Աստուած, բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածնին, ամէն:*

### Բ

*Փա՛ռք... Գրեցաւ աստուածաբան Աւետարանս Յոհաննու ի հրամայական խնդրոյ աստուածասէր և բարեպաշտուհի պարոնին տիկին Ալիծի սինէչալէսի Վիզարոսի, որ էր դուստր պարոն Հեթմոյ, որ տէր էր Լամբրոնին. յիշատակ նորա աւրհնութեամբ, և ողորմեսցի նմա Քրիստոս Աստուած, ամէն:*

*Արդ, վերոյգրեալ բարեպաշտուհի պ[ա]ր[ոնն] բազում ամս խնամարկեաց զիս բազում և մեծ գթով, զոր թէ որպէս որդեակք ծնաւղ զանզրաներկ իւր, այնպէս գթաց ի նուաստս և յանարժանս: Եւ ես՝ յետնեալս բարեաց, սուտանուն Ստեփ[անոս], որ ամաչեմ ի գերագունէ քահանայ անուամբ կոչիլ, այլ մականուամբ՝ Գոյներիցեանց: Վասն որոյ, որպէս յայժ պարտական նորա անձամբ բարեացն՝ յերկիր անկեալ աղաչեմ զառհասարակ հանդիպողացդ, յիշել ի բարին զվերոյգրեալ բարեպաշտուհի պ[ա]ր[ոնն], ծնողիւք իւրովք և ամենայն զարմիւք: Այլ և զմեղաւոր հոգս՝ զտատասկեալ գրիչս ծնողիւք իմովք եւ ամենայն զարմիւք: Եւ Քրիստոս Աստուած, որ առատն է ի տուրս, առհասարակ ողորմեսցի ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս, ամէն:*

### Գ

*Գրեցաւ ի թւ. ՉԿԱ (1312), ի դեկտեմբ[եր] ԻԹ (29), ի Կիպրոս կղզի, ի Մաղուսայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս: Արդ աղաչեմ, որ ոք հանդիպեսցի սմա՝ մի եղծեսցէ զիս վասն ճառաց ցանկիս, թէ երբ զայլ Աւետարանն չէ գրեալ, նա ոչ էր պիտոյ սմա ցանկ ճառաց, այլ ես ոչ կամեցայ զիմ ձեռահիւս պակաս իբր թողուլ, զի ի գեղեցկութիւնն պակաս է նախատանքն եւ ոչ առաւելութիւնն, ահա յայտնի է, որ ուղիղ մտաւք որոնէ՝ բաւական է իմաստնոց: Այլ յինէն, ծերացելոյս մարմնով և մեղաւք, հազիւ այսչափս ծրա-*

գրեցաւ, զգեղեցիկն վեհքն ծրագրեն, ղահամանագրգ աղաչեմ, մեր յանցանացն թողութիւն շնորհել, և աստուած ձեզ, ամէն։

(Գրիգոր Գովրիկյան, Դրանսիլվանիա Հայոց մետրապոլիտը կամ նկարագիր Եկեղեցա Հայաքաղաքի ի գիր և ի պատկերս, Վիեննա, 1896, էջ 342—346։

Լ. Ս. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 68—69)։

*Թելադրութիւն։ Այսինքն խրատ, որպէս թէ գիրքս խրատէ զստացողն...*

Դ

*Կամաւք բարեպաշտաւնեայ և աստուածասէր պ[ա]ր[ոն]ին հեստ ի հետ գծագրեցաւ պատշաճաւոր գրեանքս։ Արդ աղաչեմ մեղաւոր հոգս գրիչ Ստեփ[աննոս] Դոյնեբերից, յիշել զբարեպաշտաւնի պ[ա]ր[ոն] զվերայ // գրեալն ավինն Ալեծ բարեպաշտ ծնողիւքն [խրովք][1] և ամենայն զարմիւք զի աստուծոյ շնորհաւքն արժանի է յիշատակի ինքն և ծնաւղքն իւր և զաւակք իւր. և որ յիշէ բարեաւ աստուած ողորմի սմեղ, Քրիստոս աստուած իւր ողորմի, ամէն։ Այլ եւ մեղաւոր հոգս գրիչ՝ երես ի կործ երկրպագեալ գնմաւք և արտասուաւք աղաչեմ յիշել զաստապեալս ծնաւղիւք իմովք եւ ամենայն զարմիւք [իմովք ուսու]ցչաւք եւ նախախնամողաւք, և որք յիշէք ի բարին՝ յիշեալ լիցիք առաջի Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

Ե

Ոսկով զարդարողի

*Զմարգիս անարժան ծառայս Աստուծոյ եւ սուտանուն քահանայ եւ գծն[ագի]ն իմ [ա]կզգայնոբ իմով յիշեցէք ի տէր Աստուած Յիսուս Քրիստոս, զի յոյժ բազում աշխատեցա ի կազմած գիրքս. և ոսկով զարդարեցի զսա մինչեւ ի վերջն եւ դուք յիշիք ի տեառնէ, ամէն։*

(Գր. Գովրիկյան, նշված աշխատությունը, էջ 346—347)։

Զ

Վերջին կազմողի

*Վերստին կազմեցաւ Գործք առաքելոցն թվին ՌՀԵ—(1626), ձեռամբ սուտանուն Սէրապիոնին (ջնջված է) և Սարգսին։ Արդ, աղաչեմ զձեզ, ով հայրք և եղբարք, յիշել ի տէր միով ողորմեայիւ զտէր Ղուկաս քահանայն և որ եղև պատճառ և նա կազմել զսուրբ գիրքս, մեզ մեղաւորացս յիշեցէք ի տէր հայր մեղաց, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ ամէն։*

*(Այս հիշատակագրությունը գրված է վերջին էջում, նոտրախառն շեղագրով, Սուչավայում։ Տե՛ս սույն ցուցակի №№ 10, 11 ձեռագրերի հիշատակագրությունները, որոնք գրված են դարձյալ Սերապիոնի և Սարգսի կողմից)։*

Է

*Ընծայեցաւ Սայրամը թվ. ՌՃԽԴ (1695)։*

*(Այս հիշատակագրությունը հավանաբար գրված է Գեռլայում)։*

[1] Այս մասը՝ ցեցակեր։

3

ԱՒԵՏԱՐԱՆ

*Սուրխաթ* *ՉՂԵ—1346 թ.*

*Գրիչ՝ Կիրակոս աւագ սարկաւագ: 586 էջ: 24×17: Թուղթ: Երկսյուն, բոլորագիր, տողեր՝ 23: Կազմ՝ կաշեպատ թախտակ, արծաթազարդ:* Մանրանկարչություն՝ *Չորս ավետարանիչների նկարներ, սկզբնաթերթեր՝ կիսախորաններով, լուսանցազարդեր և զարդագրեր (թռչնային ձևավորումներով և կենդանագրերով):*

Հիշատակարան

Գրչի

*575—577 փո՛ր... Յամի եւթնհարիւրերորդի [իննսուն]երորդի հինգերորդի թուաբերութեանս Հայոց նոր տումարիս (1346), ի զաւառիս Խրիմի, ի մայրաքաղաքիս Սուրխաթ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Գրիգորի Լուսաւորչի // ի հայրապետութեան տեառն Մխիթարայ և յիշխանութեան ամենայն հիւսիսային կողմանցս տէր Ստեփաննոսի արհեպիսկոպոսի, ի յայսմ ժամանակի գրեցաւ ամենազօրիկի և գերահռչակելի գերակատար և գերապանծ, պաշտելի եւ երկրպագելի սուրբ Աւետարանս, ձեռամբ մեղօք լցեալ և անպիտան հոգւոյ՝ Կիրակոս սարկաւագի, յամսեանն աւգոստոսի ի ժԵ (15), ի փառս Քրիստոսի՝ աւրհնեալ յամենայն բերանոյ յաւիտեանս. ամէն: Արդ, աղաչեմ զամենեսին զդասս լուսերամիցդ, որք հանդիպիք այսմ աստուածախաւսութեան սուրբ Աւետարանիս, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զԿիրակոս աւագ սարկաւագ և զծնողս իմ՝ զՎարդապետ քահանայ և զմայր իմ զԱննայ՝ զփոխեցեալսն առ Քրիստոս, եւ զհաւատակրօն քահանայ զՄխիթար՝ զեղբայրն իմ, եւ զայլն հարազատ զԽաթայմ՝ զփոխեցեալն առ Քրիստոս՝ զսրբակիցն իմ: Արդ, կրկին աղաչեմ ձեզ, որոց մտաւք յիշել զմեզ յայցելութեան, և դուք յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ է աւր[հ]նեալ յաւիտեանս, ամէն: Նոյն զԳրիգոր քահանայ յիշեսջիք ի տէր մեր, որ զօրինակն շնորհեաց, եւ անմեղադիր լիջիք, ով սուրբ հայրք, վասն անարժանութեան գրոյս եւ աղալանացս, որ ի սմա, զի կայր իմ աշխատ էր, եւ չէր տեղեակ այսմ արհեստի, այլ համեմ և փափաքանաց սրտիս համարձակեցայ ի սմա եւ նոյն ինքն զաւրացուց ինձ ի կատար եղանել սմա, ի փառս սուրբ երրորդութեան, որ է աւրհնեալ յամենայն բերանոյ, ամէն:*

*(«Հանդէս ամսօրեայ», 1895, էջ 304: Գր. Գովրիկեան, Դրուագ. Հայոց մետրոպոլիսը, 1896, էջ 329—331: Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայ. ձեռ. հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 350—351: Տե՛ս նաև.* Ion Apostol Popescu, In jurul unui „Evangheliar" din 1346 *(1346 թ. գրված մի Ավետարանի շուրջ)*. „Steaua", Cluj, 1959, febr. p. 106—108):

4 (19)

ՄԱՇՏՈՑ

*ՊԼԱ—1382 թ.*

*364 էջ: 15,5×10, 6: Թուղթ: Բոլորագիր:*
*Միասյուն:* Տողեր՝ *17 և այլն:*

Հիշատակարան

Գրչի

184 բ Փա՛ռք... Գրեցաւ Մաշթոցս ի թվ. Հայոց ՊԼԱ (1382) ձեռամբ Կարապետ քահանայի անարժանի և կատ[արեցաւ] ի փառս աստուծոյ։

## 5 (18)

## ԱՒԵՏԱՐԱՆ

Կիլիկիա։ Սուչավա — ԺԴ դար, ՌՃԸ—1659 թ.

Ա մասի գրիչ՝ Յովհաննէս։ Ստացող՝ Վարդան վարդապետ։ Ծաղկող՝ Սարգիս Պիծա՞կ։ Բ մասի գրիչ՝ Աւետիք սարկաւագ (1659 թ.)։ Կազմող՝ Միքայէլ (1664 թ.)։ 704 էջ։ Ձեռագրի հնագույն կեսը՝ մագաղաթ, իսկ երկրորդ կեսը՝ թուղթ։ 17×12,5։ Երկսյուն։ Տողեր՝ 17—18։ Մանրանկարչության՝ երկու խորաններ և Մարկոս ավետարանիչի մանրանկարը (ԺԴ դ.)։ Մնացյալ խորանները 1659 թ.։

Հիշատակարան

Հնագույն մասի գրչի և ստացողի

Ա

Զստացող սորա Աւետարանիս զՎարդան եպիսկոպոս և զհայրն իւր զՎասիլ քահանայ, և զեղբայր իւր զՍտեփանոս քահանայ յիշեցէք ի տէր, ծնողաւ և զարմիւք և թողութիւն յանցանաց խնդրեցէք։ Եւ որք յետոյ ժառանգէք՝ զաստուածայն անուն մի՛ ջնջէք և զձերն գրէք։ Զի անթողի մեղք է։ Եւ որք յիշէքդ և տէր զձեզ յիշէ և որ ասէն ամէն։

Բ

Տէր Վարդան չխտամ թէ այնելն է՝ Թորկեր, թէ չայնելն, չամիմ լալս յաչքս։

Գ

Տառապեալս Յովհաննէս, և յաշխարհիս ծով անթիւ մեղաւքս, հրամանաւ Վարդան եպիսկոպոսի գրեցի զաստուածաւանդ Աւետարանս։ Թէպէտ և անարժան էի այսմ ձեռնարկութեան, այլ կանխաւորն գրաւեաց զիս պատուական տէր Վարդան եպիսկոպոսի և ստացաւ զսա ի նեղկեալ մեղօք ձեռաց, որում տէր վայելել տայ և հանդիպողացդ մաղթեմ չյղել աւելի մեզ, այլ ներել իբր կարի, զի հարկ է գիտացանես յաղթել սխալս և ոչ կարեմ լծընկեց լինել, յատուած յաւալ ասպարէզ փութամ։

Դ

Նոր մասի գրչի և կազմողի

Փա՛ռք... ի թուականութեան Հայկազեանց ՌՃԸ (1659) և օգնութեամբ ամ-սոյն Բ (2)-րդ գրեցաւ ընդ հովանեաւ ստ. գումս սուրբ Խաչին ի հայրապետութեան տէր Յակոբին և առաջնորդութեան Սահակին և թագաւորութեան Գի-կային[1]։

---

[1] Խոսքը վերաբերում է Մոլդովայի իշխան Գեորգի Գիկային (իշխել է 1658 թ. մարտի 3—1659 թ. նոյ-ի 2)։

*Ի յայսմ ժամանակի գրեցաւ, զի էր Աւետարանն երկու գլուխն ամենագովելի և հաշակելի գերապատուր և գերազանց պաշտելի և երկրպագելի սուրբ Աւետարանս ձեռամբ մեղաւոր լցեալ և անպիտան ոգւոյ Աւետիք սարկաւագի և իմ որդի Մինաս եպիսկոպոսի Սէչավլցի, որ զինքն զաղախնին սղանեցին։ Եւ գիրկաւ գլուխ Աւետարանն զաղախի ձեռաց ի գերութենէ ազատեցին այս աստն եղբարքս, որ են անուամբք այսոքիկ. տէր Սիմոն աւագերիցայ որդի, Մանուկ վաթան, Կիրակոս վաթան, Ասվատուր վաթան, Մանուկ Գրիգոր վէթին, Խաթլուշ Գրիգորին, Միրզաւն Դաւթին, Յովանէ[ս]ն Ենոքէին, Խաչատուրն Յովաննէսին, Պաւղոսն Նիկոլին։*

Ե

*Ես անարժան մեղօք զառածեալ Միքայէլ երէցս Երզնկացի եկա ի Պուղտանեաց երկիրն ի Սէչավ քաղաքն Թվ. ՌՃԺԳ (1664)-ին, զսուրբ Աւետարանս կազմել ետին // այս աստն եղբարքս և եդին յիշատակ ի դուռն սուրբ Աստուածածնի վանացն՝ իւրեանց ծնողացն հոգւոյն, ամէն։*

*Զկազմող Միքայէլ երէցս յիշեցէք մեղաւ Հայր մեղայիս. յորժամ ընթեռնուք զսուրբ Աւետարանս, և Աստուած ըզ[ձեզ] յիշէ իւր միւս անգամ գալստեանն, ամէն։ Հայր մեր, որ։*

*(Գր. Գովրիկյանը վերահիշյալ իր ուսումնասիրության մեջ, էջ 336, բերել է Գ. հիշատակարանության հետևյալ սխալ ընթերցումով «...ձեռամբ... Աւետիք սարկաւագի եւ իմ որդի Մինաս եպիսկոպոսի Սէչավլցի...» փոխանակ կարդալու. «...եւ ԵՄ որդի Մինաս եպիսկոպոսի...»)։ Այստեղից էլ նա սխալ եզրակացության է հասել, գրելով, որ «հիշատակված մասը իրը լցրել են «Աւետիք սարկաւագն ու իր որդին՝ Մինաս եպիսկոպոս սուչավացին»։*

6 (23)

ՇԱՐԱԿՆՈՑ ԵՒ ՊԱՐԶԱՏՕՄԱՐ

*Կամենից* *ՌԺԴ—1565, 1634—1638 թթ.*

*14,2×10։ Գրիչ պարզատումարի՝ Աղանեգ, տէր Գրիգորի ավագերեց օղլու։ Նոտրգիր։ Թուղթ։ Միասյուն։* Տողեր՝ *17։* Մանրանկարչության՝ *խորան, գլխագիր, լուսանցազարդ և զարդագիր։*

Հիշատակարան-հիշատակագրության պարզատումարի *(հայատառ ղփչաղերեն)։*

Ա

*ՌԺԴ (1565)։*

Բ

*ՌՁԳ (1634)։*

Գ

*Բու պարզատումար օրմախթմիշ քէրաքի տիր աա քօրըլու աա հար եըլտա պալխանը նէքի պարքէնտիրնա գարըլըըը, աա պարչա նէմանը աչըխ բօրխուզալյալ։ Եւթն երբեակատն պաշլանըը Ֆրանգ աըլարը պիրա իչլանըը*

տուածակոփ սուրբ քա[ղա]քն Երուսաղէմ ի տաճարն սրբոյն Յակոբայ յիշա-
տակ լիցի տէր Յովհաննէսին, զոր տէր աստուած բարով խաղաղութեամբ վայե-
լել տացէ իւր և իւր ծնաւղացն։

Բ

Փրկողի

236բ Դարձեալ ես Միրզայս Նիկոլին որդին գնեցին զաղաքին Թաթին շան էան իմ Հալալ հախովս ու գրի Սուրբ խաչն թվ. ՌՃԴ (1655)։

Գ

252 Ես Միրզայս որդի Նիկոլին գնեցի իմ Հալալ-Հախովս հա զե-
րութեան զաղաքնան ու ավի յիշատակ այլմի Սուրբ խաչն եկեղեցին
թվ. ՌՃԴ (1655)։

Տ (15)

ՄԱՇՏՈՑ

Սուչա՞վա ԺԶ—ԺԷ դդ.

Թերթ՝ 308։ 18,8×13,8։ Թուղթ։ Բոլորագիր։ Միասյուն։ Տողեր՝ 16։

Հիշատակագրություններ (հետագայի)

Ա

Աստուած ողորմի Մարտիրոսին հոգոյն հանգիստ տու Աստուած
թվին ՌՃԻԵ (1676) հոկտեմբերի ԺԸ (18) օրն դշբի (չորեքշաբթի),
մեկ տարի էր ի հիւանդութեան կեցաւ, տարէն վերա մեռաւ, ինչ օր
հիւանդացաւ այն օրն մեռաւ։ Զանդակյան, զանդակյան կուս
Մարիա ///

Բ

Աստուած ողորմի Վարդիկին կարբենեանն հոգւոյն սոյն...

Գ

Հայատառ ռումիներեն գրվածք՝ «Միլուիեշտէ մէն է...» (Տէր
ողորմեա)։

Ը (8)

ՄԱՇՏՈՑ

Սուչավա ՌԾԲ—1603 թ.

Գրիչ և ծաղկող՝ Աբրահամ Սէջովցի։ Թերթ՝ 301։ 21×16,5։
Թուղթ։ Բոլորագիր և մասամբ շղագիր։ Միասյուն։ Տողեր՝ 19։

Հիշատակարան, հիշատակագրություն

Ա

Գրչի

497 Ո՜, ո՜, ո՜, անարժան և մեղօք ի լի և ամենայն գործօքս չար
զանէր Աբրահամ մեղաւոր կրօնաւորս Սէջովցի յիշեսջիք ի մաքրա-

*փայլ աղօթս, ձեր, որ զսա գրեցի և ծաղկեցի[ի] և բազ կարեաց իմոց ի թվին ՌԾԲ (1603), և յիշողն յիշեալ լիցի ի միւսանգամ գալըստեանն Քրիստոսի, փառք յաւիտեանս, ամէն։*

Բ

Այլ անձի

*Թվ. ՌՃ ու Կէ (1718) ես Լեհ. [Լուսիկ] որ եմ որդի Վասիլի Վրձներէսցուլ գրեցաւ ի Կաւր ///*

10 (10)

ՇԱՐԱԿԱՆ

*Սուչավա* *ՌՀէ—1628 թ.*

Գրիչ՝ *Սարգիս Մելանեցի*։ Ծաղկող և խազող՝ *Սրապիոն Բաբերթացի*։ Ստացող՝ *Եկեղեցյան խոճայ Նիկօլ*։ Էջ *488*։ *21,5×15,5*։ *Բոլորագիր*։ *Թուղթ*։ *Միասյուն*։ Տողեր՝ *21*։ Մանրանկարչության՝ *գլխազարդ, լուսանցազարդ և զարդագիր (բուսական)*։

Հիշատակարան

Ա

Գրչի

130 *Ո՜վ զՍարգիսըս անպիտան,*
*Մեղաց գերիս և չարաքան,*
*Բընաւ յիշման չեմ ես արժան*
*Վասն մեղացս, որ առ իս կան։*
*Եկեղեցոյ մանկունք, որ կան,*
*Յորժամ հընչէք զայս քաղցրաձայն,*
*Զձայնըս բոլոր զամէնն ի լման,*
*Յիշման արէք զսա զիս արժան։*
*Ո՛վ որ զմեզ սըրբով յիշէ՝*
*Քրիստոս աստուած զինքն աւր՞նէ,*
*Անճառ խոստմանց արժան առնէ,*
*Որ իւր սըրբոցն խոստացեալ է.*
*Փառք աստուծոյ, ամէն։*

Բ

236 *Ո՜վ զմեղաց գերիս,*
*Զյունայնացեալս առ ի բարիս,*
*Եւ զարարս ի չարիս,*
*Ըզնուաստս ամենայնի՝*
*ԶՍարգիս գրչիրըս Մելանեցի*
*Յիշեցէք միով ողորմեաւ,*
*Յիշողքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, ամէն։*

*Ի թվականութեան Հայոց ՌՀէ (1628)։*

Գ.

435 Փա՜ռք... Արդ գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի ձայնքաղ, ի լաւ և ընտիր աւրինակէ, ձեռամբ յոգնամեղ և մեղսամած փցուն Սարգիս գրչի Մելանենցւոյ, ի յերկիրն Օլախաց, ի քաղաքն որ կոչի Սէչավ, ընդ հովանեաւ Սուրբ Օգոստինոսի վանիցն և առ ստն Սուրբ Լուսաւորչին, ի Կաթողիկոսութեան տէր [ ][1] և յառաջնորդութեան տէր Ղազար վարդապետին և իշխանութեան խանձայ Ծերիկին և թագաւորութեան Միրօն վոյվոդային[2] և ասմէկերէցութեան տէր Անդրիասին։

Որք աստուածային սիրոյն հրավէն վառեալ են՝ միշտ փութան բարի և աստուծոյ հաճելի յիշատակ յաշխարհի թողուլ։ Որպէս և սիրելիս Աստուծոյ եկեղեցպան խանձայ // Նիկօլն, որ և ստացաւ զսյս ձայնքաղս իւր հալալ ընչիցն և արդեանցն իւրն յիշատակ և ծնողացն՝ հօրն Նուրատինին և մօրն Ռակիհաթին /// և իւր որդոյն Նիգօլին /// բլին և ամենայն արեան մերձաւորացն, ո[րք] /// են հանգուցեալ, ամէն, որ և եա զսա յիշատակ ի Սուրբ Խաչ եկեղեցին. ով ոք չանի իշխանութիւն հանել զսա ի դրանէ սուրբ եկեղեցւոյ։ Դարձեալ յիշեցէք ի սուրբ աղօթս ձեր, ով դասք քահանայից և ուսումնասէր սարկաւագացդ, ով որ հանդիպիք սմա կամ օրինակելով կամ ընթեռնլով, յիշեցէք զծաղկող և զխազող սորս զնուաստս ի բարեաց և զհանեալս ի գրչագրաց զՍրապիոնս Բաբերթցի միով ողորմեայիւ։ Եւ զստացողեալս և զհանեալս ամենայն բարեաց զծնողս ի բարին և զարարս ի չարին, զհոգս և զփոշիս, զՍարգիս գրիչս յիշեցէք ի տէր։

Արդ, երես անկեալ աղաչեմք զձեզ, անմեղադիր լերուք խաշութեան և սխալանաց գրոյս, զի կար մեր այս էր։

437 Մանաւանդ յիշեցէք ի սրբափայլ աղօթս ձեր եկեղեցպան խանձայ Ծերիկն, որ զօրինակն շնորհեց, և որ ստացան է ի սուրբ բարեաց՝ ձեզ յիշ[ո]ղացդ և մեզ /// տառս աղերսութեամբ։

Դ.

Այլ ձեռքի

Ուսէփ Պօղոսին է սա Թվին. 1840։

11 (1)

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

ՌՀԸ—1629 թ.

Սուչավա

Գրիչներ՝ Սարգիս Մելիքենցի և Սրապիոն Բաբերդցի։ Ստացող՝ Տէր Նիկողայոս։ Փրկող՝ Անեցի Եույճի Փիրուխան, Վասիլ (ԺԷ դ.)։ Թուղթ։ էջ՝ 1152։ 40,5×26։ Բոլորգիր։ Կազմ՝ կաշեկազմ։ Վի-

1 Ազատ տեղ է բաց թողնված կաթողիկոսի անունը լրացնելու համար։

2 Միրոն Բարնովսկի—Մոհիլը, իշխան Մոլդովայի (1626 թ. հունվ—1629 թ. օգոստ-ի 30)։

Ցակ՝ տեղ-տեղ, Հատկապես գլխավոր Հիշատակարանի մի մասը վնասված է անկյունի խոնավությամբ։ Մանրանկարչություն՝ խորան՝ բուսական զարդերով, լուսանցազարդեր և զարդագրեր։ Երկսյուն։ Տողեր՝ 37։

Հիշատակարան

Սարգիս դպիր

Ա

303 *Յայսմ ամսոյ բնագնաց է. և զինչ այսօրս լինի՝ ձմեռն այնպէս անցանէ, թէ ցեր և թէ ցուրտ, թէ պաղ և թէ ամպ։ Յիշեցէք ի Քրիստոս զուսուցիչ վարդապետն իմ, զԿամենիցցի Յոհան, որ բազում աշխատութեամբ ուսոյց մեզ արհեստ։*

Բ

631 *...Ողորմի Քրիստոս աստուած ստացողի գրոցս տէր Նիկողայոսի և ծնողացն Պարոն Վարդին...։ Եւ անպիտան դպրի Սարգիս դպրին... Եւ վարժապետին Յոհան դպրին... Կարողութեամբն աստուծոյ և միջնորդութեամբ սրբոցս սկսաք սուրբ գիրքս և վերջացաւ ի յայսմ վայրի իմում բաժին։ Եւ ի յայսմ ամուրչէս յաւարտ եհան հոգևոր ծնողքն մեր և խրատատուն Սրապիոն դպիրն, զոր և շատով յատարանեցաք ի թվականութեանս Հայոց ՌՀԸ (1629) ամին։*

Գ

Սրապիոն դպիր

749 *...Ողորմի Քրիստոս աստուած ստացողի գրոցս տէր Նիկողայոսին և ծնողացն պարոն Վարդին, խաթունշային և կողակցայն Գուլպահարին, և զաւակացն Ճաշխաթունին, Օղխասին և եղբարցն մահտեսի Պաստարին, Ալէքսանդրին, Սիրունին, Միրիճանին, և կողակցան Սիրմային, և զաւկացն Հախփիրմէքին, և ամենայն արեան մերձաւորացն, և միջնորդի սորա Վարդապետին, որ եղև պատճառ Յայսմաւուրքիս, և անարժան դպրի Սրապիոնի և կողակցան Մարթային, կարդացողաց և լսողաց և որ ողորմին ասէ, ամէն...*

Դ

*...Որոց աղօթիւքն ողորմի Քրիստոս աստուած ստացողի գրոցս տէր Նիկողայոսին և ծնողացն պարոն Վարդին, խաթունշային, և կողակցան Գուլպահարին, զաւակացն Ճաշխաթունին, Օղխասին, և եղբարցն Ալէքսանդրին, Մովսէսին, Պաստարին, Սիրունին, Միրիճանին, և կողակցան Սիրմային, զաւկացն Հախփիրմէքին, և եղբօր որդոյն Վարդապետին, որ եղև պատճառ Յայսմաւուրքիս, և անժ-*

նոյն միաբանութեան, և անապատն գլխի Սրապիոնի և ուսուցչին իմոյ Հիլանցի մահտեսի տէր խաչատուր քահանային, որի և քաջ քարտուղարանի, նաև ծնողաց իմոց, և հոգևոր եղբօր միոյ Սարգիս դպրի Մելտեմեցոյ, որ բազմաջան քրտամբ կոկեց զթուղթն Յայսմաւուրքիս, կարդացողացս և լսողացդ և որ գաղափարեն, ամէն:

Ե

Գլխավոր հիշատակարան

1145 ...Վասն որոյ ցանկացող եղեալ սուրբ գրոցս տէր Նիկողայոս քահանայն եւ եկեալ ի միտս իւր եւ լուեալ զբան աւետարանին ձայնին, զոր եւ հրամայէ, թէ՝ Նմանեցաւ արքայութիւնն երկնից առն վաճառականի, որ խնդրիցէ մարգարիտս գեղեցիկս և գտեալ մի պատուական մարգարիտ, երթեալ վաճառեաց զամենայն ինչ, զոր ունէր եւ գնեաց զայն մարգարիտն: Նոյնպէս եւ սա տէր Նիկողայոս քահանայ զայն հրաման առեալ եւ եղ յոյս յանձին եւ հետեւեցաւ սուրբ գրոցս, որ կոչի Յայսմաւուրք եւ զամենայն մարմնական ինչ առ ոչինչ համարեալ, վաճառեաց զինչս ամենայն ի հալալ վաստակոց իւրոց եւ ստացաւ զայս անմահ եւ անգին մարգարիտս յիշատակ հոգւոյ իւր եւ նախնեաց իւրոց՝ պապոյն Էլիազարին եւ իւր պապին Շահրիմարին եւ մամայն Փաշային, հօրն պարոն Վարդին եւ մօրն Խաթունշային, եղբարցն Կուլպահարին եւ քերն Փաշային, Օղիտային, փեսին Խաչկօյին եւ քերն Փաշային եւ եղբարցն մահտեսի Գասպարին եւ կողակցուն Խանզատային եւ իւր որդոյն Վարդապետին եւ կողակցուն Վարդիկին, որդոյն Մարտիրոսին եւ Գասպարին, միւս որդոյն Յոհաննէսին, որ յայժմ ամի փոխեցաւ առ աստուած եւ կողակցուն Շահմելիքին, երկրորդ եղբօրն Ալէքսիանոսին, կողակցուն Չիհանին, Նազլիկին, Թուրվանդային եւ որդոյն Խաչատուրին, երրորդ եղբօրն Միրիճանին եւ կողակցուն Սիրմային, որդոյն Մելքոնին, Կիրակոսին, Պօղոսին, Խաչերեսին, Աբիստաղէսին միւս Աբիստաղէսին, Մեսրոպին, Պապաճանին եւ դստերն Հափսիմէին: Չորրորդ եղբօրն Սիրանին եւ ամենայն արեան միաբանիցն, կենդանեաց եւ հանգուցելոցն, որ առ Քրիստոս են փոխեցեալ, վասն որոյ աղաչեմ զամենեսեանդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով եւ կամ հարեւանցի տեսանելով՝ յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զտէր Նիկողայոսն հանդերձ ամենայն զարմիւք, եւ դուք յիշողքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, այժմ եւ անդադար յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Արդ, գրեցաւ սուրբ գիրքս հարանց, որ կոչի Յայսմաւուրք ի թուականութեանս հայկական տոմարի ՌՀԸ-ին (1629), կաթողիկոսութեան Էջմիածնայ սուրբ աթոռոյ տէր [ ][1], առաջնորդութեան Օլախաց երկրի տէր Ղազար վարդապետին, առաջնորդութեան տէր Անդրէասին եւ երէցփոխանութեան պարոն Մերիկին եւ այլ քահանայիցն տէր Յոհաննէսին, տէր Ղուկասին, տէր Ղազարին, տէր Վար-

[1] Ազատ տեղ է թողնված կաթողիկոսի անունը լրացնելու համար:

զանին, տէր Աւետիքին, տէր տէր Սիմէոնին, նորընծայիցն՝ տէր Աստուածատուրին, եւ միւս տէր յԱստուածատուրին, տէր Մովսէսին. եւ Թագաւորութեան [ ][1] պարոնին Գրիգոր երկիրս Օշականց, ի քաղաքս Մէջօկ, ընդ հովանեաւ վանորէիցս Սուրբ Հաճկատարի եւ Սուրբ Աստուածածնանցն եւ Սուրբ Լուսաւորչին, քանզի սկիզբն ի Հաճկատարն արար եւ յաւարտն ի Սուրբ Օգսէնս։ Ձեռամբ անարժանիցս մեղաւորս Սրապիոնի եւ յանուն Սարգիս դպրի, ի խնդրոյ տէր Նիկողայոս քահանային, որ է սոտ եղբէյն Բարսեղեան ի գեղջէն Հրնաէու։ Արդ, աղաչեմք զձեզ մանկունք նորին ծոցն մեր Սիովնի, սուրբ քահանայքդ պատուելի, որ էք տեսող ծաղկաքին, որ պատահիք սուրբ գրոցս՝ յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՍրապիոն եւ զյուսացուցիչն իմ զմէյսէսն տէր Խաչատուր արի և քաջ քարոզարանն Հիզանեցի, որ բազում աշխատութեամբ և զարդաքոյթ սիրով հասոյց բերս եւ հաստատեմնս ի յաւուրս դրշութեան, զփոխարէն ի Քրիստոսէ առցէ ամէն։

Դարձեալ յիշեսս անկեալ եւ գլուխ ի գետին դնելով, ո՜վ դասքն քահանայից եւ ուսումնասէր սարկաւագանք, յորժամ ընթեռնուցուք զպատմութիւնն սուրբ հայրապետաց և նահատակութիւնս սուրբ մարտիրոսաց, յիշեսջիք ի յաղօթս ձեր անպիտան հոգս եւ փաշի զՍրապիոն գծօղս Բաբերթացի և զհայրն իմ Զանումն, և զմայրն իմ Տանֆիայշայն, զքոյրն իմ Լուսխաթունն, փոքր եղբայրն իմ Գրիգորն, որք են հանգուցեալ առ Քրիստոս, և կենդանի եղբայրն իմ պարոն Յակոբն, զկողակիցս իմ զՄարթայն, և որդիքս Յակոբն և Աղքէհան՝ հանդերձ ամենայն զարմիւք իմովք, ամէն։

Դարձեալ յիշեսջիք ի սրաթափիչ յաղօթս ձեր, ով դասք լուսեղաձից քահանայքդ աստուածային սուրբ եւ մաքուր ընտրեալ դասին, ո՜վ մանկունք Սիովնի եւ ուսումնակիցք մեր, որք հանդիպիք այս սուրբ գրոցս կարդալով կամ օրինակելով։ Արդ ես նուաստս ամենայնի եւ զառածեալս մեղօք ի լի, ծոյլս ի բարին եւ զչարագս ի չարին, սուտանուն Սարգիս դպիրս՝ գծողս աղերսեմ ի ձեզանէ յիշել ի տէր՝ զյուսացիչն իմ զՅովանէսն դպիրն, որ բազում ջանիւ եւ աշխատանօք զկրթեալն եւ զանփիմաստս, թանձրամիտս եւ յանհայս ուսոյց արհեստ՝ դպրութեան. միայն փոխարէն հատուսցէ տէր աստուած երախտեացն իւրոյ հարիւրապատիկ ի հանդերձեալ կեանսն, ամէն։ Դարձեալ յիշեսջիք ի մաքուր յաղօթս ձեր զհայրն իմ զմահտեսի տէր Յոհաննէս քահանայն, եւ զմայրն իմ Զարդարն, եւ զքոյրս Դավլաթն, եւ զեղբայրքն իմ Գասպարն, Կիրակոսն, Մելքոնն, Թորոսն եւ ամենայն արեան մերձաւորքն իմ զկենդանիս եւ զհանգուցեալսն առ Քրիստոս, ամէն։

Աւարտեցաւ սուրբ գիրքս ի ձեռն եւ ի դժար ժամանակիս եւ ի ձմերացեալ յաւուրս վերջին եկն ի վերայ մեր բարկութիւնն աստուծոյ, վասն ծովացեալ մեղաց մերոց յարեաւն յազգն անհաւատից, զոր եւ անօրէն, անաստուած եւ զազանաբարոյ քարապահանջ

[1] Այստ տեղ է թողնված, քանի որ հիշատակարանի գրման ժամանակ գահակալական պայքար էր գնում, և դեռ Մողոլաց իշխան չկար։

բանաստ, կոչին նեռագը, որ է Թաթարն՝ եկեալ մտին երկիրն Իլախաց յաւար առնել։ Որ եւ բազում քաղաքս եւ գեղս աւերեցին եւ զբազումս գերեցուցին, յետոյ եկեալ ազգն Իլախաց բազում զօրօք ի վերայ նոցա, զկեսին թափեցին եւ զբազումս սրախողխող արարին. եւ կէսքն իբրեւ զխոզ վարեալ տարան ի թախիծն գալին. եւ մնացեալքն եկին փախստական երկիրս Օլախաց եւ վրդովեցուցին երկիրս զայս. եւ զբազումս գերի առեալ տարան։ Եւ յետ երից եւ չորից աւուրց անցանելոյ նոցա՝ եկն եհաս եւ այլ չարագոյն բօթ, թէ ահա Միրօն պարոնն[1] ժողովեալ է բազում Ղազախ եւ կուգայ ի վերայ միւս պարոնին։ Եւ ահա կատարեցաւ բանն տէրունական, որ ասէ թէ Տուն Բ(2) բաժանեալ աւերեսցի, վասն որոյ մեծամեծքն Միրօն պարոնին զալլեցին զնա, որ եկեալ փախստեամբ գնաց նստաւ ի բերդն Խօթինու եւ երկիրս անտիրացաւ ի թագաւորաց Դ(4) ամիս, յետոյ եկն որդին յՇատաօլ պարոնին[2], այս զալով նստաւ ի Եաշ քաղաքին աթոռ թագաւորութեանն, բառ յայնմ, որ ասէ, թե Աստուած որ բարկանայ ի վերայ երկրի մանուկ թագաւոր տայէ նոցա եւ ազայ առաջնորդ։ Ահա կատարեցաւ բանքս այս ի վերայ Օլախաց երկրիս, զի նախարարքն սորա ինչպես որ կամեցան այնպէս կու կողոպտեն երկիրս այս։ Վասն այսորիկ հրամայէ կայծականամարտիւ մարգարէն յեսայի՝ Ամենայն անձինք ի ցաւ եւ ամենայն սիրտ ի տրտմութիւն եւ չիք առողջութիւն ոտից մինչեւ ցգլուխ։ Եւ քնարերգան մարգարէն Դաւիթ ասէ ի յերգս, թէ Այս ամենայն եկն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Բարեխօսութեամբ սրբոցս որ կան ի սմին յայսմիկ աստուած խաղաղութիւն տացէ երկրի եւ թագաւորաց հաշտեխութիւն։ Արդ, աղաչեմք զձեզ, հայրք եւ եղբարք, յիշել ի տէր միոյ ազարմեային եւ աստուած, որ տատն է ի տուրս բարեաց, ձեզ յիշողացդ եւ մեզ յիշելոցս ողորմեսցի ի միւս անգամ գալստեանն, ամէն։

(Ծաղկանկարչության մեջ մեծատառերի տողեր կան նկարված Յայսմաւուրքի կազմողներից Գրիգոր Ծերենց վարդապետին, որին հաջորդում է տարբեր բովանդակ չափածո հիշատակարանությունը)։

Զ

Փառք տամ հայցեմք սուրբերդ բարի,
Ոչ մոռանայք ծառայքս զերի՝
Սրապիոն Բաբերթացի
Եւ զՄարգարն Մելանեցի։
Ո՛վ քահանայքդ նազելի
Եւ սպասաւորք սուրբ տաճարի,

---

1 Միրոն Բարնովսկի-Մովիլե եղել է Մոլդովայի իշխան 1626 թ. հունվ.— 1629 թ. օգոս. 30։

2 Շտատոլ պարոնը Ռադու Միհնեան է, որը եղել է չորս անգամ Վալախիայի և երկու անգամ էլ իշխան Մոլդովայի (1601—1626)։ Վերևում հիշված մանուկ իշխանը Ալեքսանդրոս Կոկոնայն է, որը եղել է իշխան Մոլդովայի (1629—1630 ապր. 29)։

Յիշման աւէք զմեզ արժանի,
Որ եմք անձամբքս մեղօք ի լի։
Զձեզ աղաչեմք մանկանց բարի,
Սարկաւագունք նոր Սիոնի,
Դուք հայցեցէք տեառնէն ձրի,
Որ թողութիւն մեզ պարգեւի։
Սուրբ քահանայքդ հոգելի,
Դուք նմանողք էք հրեշտակի,
Միջնորդ լինուք տեառն Յիսուսի,
Մեղանքն մեր ոչ յիշեսցի։
Եւ տրուպ Սրբոյս Բաբերթացի
Զձեզ աղաչեմ տրտասուելի,
Ո՛վ սուրբ հայրերդ նազելի,
Յիշել զծնօղքս իմ ի բարի։
Եւ հօրն իմոյ Զանում անի,
Եւ մօրն իմոյ Տահփաշալի,
Եղբօրս իմոյ, Յակոբ կոչի
Եւ միւսոյն՝ Գրիգոր անի։
Եւ կողակցոյս իմ Մարթայի,
Որդւոյս իմոյ Յակոբ անի
Եւ միւսոյն Աբենդ կոչի,
Եւ իմ արեան մերձաւորի։
Զմեզօք լցեալ ամենայնի
Եւ զեղջերեալս մէջ աշխարհի,
Զարաւոյ հողս եւ փոշի՝
Սարգիս գրիչս Մալաթեացի։
Զձեզ աղերսեմ, սուրբքդ արի,
Որք հանգիպիք յայսմ տառի,
Եւ ընթեռնուք սիրով սրտի,
Դուք ասացէք Տէրն ողորմի։
Եւ իմ նախնեաց ամենայնի
Եւ ծնողացն իմ հոգելի,
Որ զիս ծնան մեղօք գերի
Եւ սնուցին մէջ աշխարհի։
Եւ հօրն իմոյ քահանայի
Տէր Յովաննէս անուն կոչի,
Նահատակեալ ի մէջ երկրի,
Յաւազակաց ձեռք խողխողի։
Եւ մօրն իմոյ Զարզար անի,
Որ եղեալ կայ գերեզմանի,
Քուեր իմոյ Գուլվարդ կոչի,
Ինքն մարմնով կայ կենդանի։
Եւ իմ եղբարցս չորրորդի,
Որք են առողջ մարմնով յերկրի,
Պաղատեցէք տեառն Յիսուսի,

Զի թողութիւն նոցա լիցի։
Նախ եւ յառաջն Գասպարի
Եւ երկրորդին Կիրակոսի,
Եւ միւսոյն Մելքոն կոչի
Եւ չորրորդին Թորոս յորջի։
Եւ իմ արեան մերձաւորի,
Որ կան եղեալ հող տապանի,
Զի թողութիւն նոցա լիցի
Ի յարութեան յաւուր վերջի։
Եւ կենդանեաց յայսմ աշխարհի
Կացցեն ամրոց՝ անզրդուելի,
Խաղաղութիւն պարգեւեսցի
Մինչ ի խորին ժամանակի։
Զնրաստպս ամենայնի
Եւ զեզերեայս ի մէջ երկրի,
Սարգիս զդպիրս Մելանեցի,
Զատանատրս չարարգեցի։
Որք հանդիպիք յայսմ կտակի
Եւ ընթեռնուք սիրով սրտի,
Դուք տացէք տէրն ողորմի
Ձեզ եւ մեզ ամենայնի։
Յիշողքդ զմեզ՝ յիշեալ լիջիք
Արքայութեան Քրիստոսի,
Յարժամ նստցի ի յատենի
Արժանացուք կենաց ձայնի։
Եւ նմա փառք ամենայնի
Ընդ Հօր Հոգւոյն Ճշմարտի,
Յաւէտ յայժմուս եւ միշտ էի
Եւ յաւիտեանս յաւիտենի,
Ամէն, ամէն եւ եղիցի։
Ձեռս երթայ գանձայ ի հող,
Գիրս մնայ յիշատակող
Ով, ով, զարձեալ ով,
Վա՛յ ինձ. մեղաւորիս Ո (Հազար) բերան։

է

Փրկղներ

5 Որոց աղօթիւք ողորմի Քրիստոս աստուած։ Յայսմաւուրքս ի գիրութենէ՝ ազատողին լԱկնցի նայեն Փիրուխանին եւ իւր ծնողացն, հօրն Խաչին, մօրն Յուսկային եւ իւր եղբարցն Թամուրին, Աստուածատուրին, Աբրահամին, Յակոբին, Յոհանին, Մովսէսին եւ յամենայն յարեան մերձաւորաց եւ որ զողորմին ասէ, ամէն։

Ը

549 *Որոց աղօթիւք ողորմի Քրիստոս աստուած զաւրք Յայմաւուրքս ի գերութենէ ազատող խօճայի Ն[իկ]ողայոսին Վասիլին եւ Հօրն Մանուկին եւ մօրն Մարուցային եւ կողակցին Խաթունմելիքին, եւ եղբօրն Խօճայ Թումանին եւ որդոյն Օվանէսին եւ Օհանին զաւակացն Անդրձային եւ Մարուցային եւ Այխաթունին եւ Հոփփոմէին եւ ամենայն արեան մերձաւորացն եւ անդրանուն գրչի սորին /// ամէն /// Յովանէս Խութիխու քահանայ ///*

Թ

Յանկագրողի

*Գրեցաւ ցանկս այս ձեռամբ մեղապարտ Տէր Սիմէոնիս Թարսակեան, յամի տեառն 1725 սեպտեմբերի ամսոյ 19։*

*(Այս հիշատակագրությունը ամենայն հավանականությամբ գրված է Տրանսիլվանիայի Զարզավ քաղաքում, քանի որ ցանկագրողը հիշյալ տեղի հայոց ժողովրդապետն է եղել)։*

Ժ

Այլ անձի

*Ձեռագրի վերջում.*

*Ի թվ. ՌՄԺԸ (1769) մարտի է (7) եղեւ գիրս այս, ինչպես եւ Կաշբար, որդի Աբրահամի այս գիրս գրեցի, վասն դըշագործութեան հարմար, ով որ կարդայ չի մեղադրէ, զերէ ձեր զնացելէ է, ամէն։*

Ծնթ. *Վկայաբանությունների վերջում բազմաթիվ անգամ հիշատակված են սուացողի և նրա հարազատների անունները։*

*(«Հանդէս ամսօրեայ», 1913 թ., էջ 691—697։ Ձեռագրի մասին տե՛ս նաև* Ion Apostol Popescu, „Un valoros document cronicăresc" *(Ժամանակագրական արժեքավոր մի փաստաթուղթ).* „Steaua" Cluj.1961, martie.

12(24)

*ԲԱՌԱՐԱՆ ՀԱՅՈՑ*

*Երևան* *ՌՃէ—1658 թ.*

Գրիչ՝ *Վարդան։* Թերթ՝ *244։ 13,8×9,5։ Թուղթ։ Նոտրգիր Երկսյուն։* Տողեր՝ *12—14։*

Բովանդակություն

*Սկիզբ. Այս տառք ձայնաւոր և երկաձայնակ են, սկիզբն գրոցն։*

*Արարածք — անշէն.*

*Արարանայ — հօր օրհնութիւն...*

Վերջ. Օգտող — ըմպել

Օգտել — ի բույց քիզգել, ճողարկել, պատառել, քաղքալել

Խազագիր-հիշատակագրություն

1ա Բառարան Հայոց գրեցաւ ի Թվ. Հայոց ՌՃԷ (1658) յԱնապատին Երեւանայ ի Վարդանայ Համբակէ:

13(11)

ԱՒԵՏԱՐԱՆ

Եուղ ՌՃ և Ը—1659 թ.

Գրիչ՝ Սիմէոն քահանայ: էջ 576: 19,5×15: Թուղթ: Երկսյուն: Բոլորագիր: Տողեր՝ 23: Մանրանկարչություն — Համաբարբառային խորաններ, Ավետարանիչների նկարներ և սկզբնաթերթեր՝ կիսախորաններով: Կազմ՝ կաշեպատ տախտակ:

Հիշատակարան գրչի

575 Փա՜ռք... Արդ գրեցաւ Սուրբ Աւետարանս ի թվականութեանս Հայոց ազգի ՌՃ և Ը (1659) ամի, ի յերկիրն Պաղդանաց ի մայրաքաղաքն Եուշն, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Լուսաւորչայն, ձեռամբ յոգնամեղ և մեղապարտ սուտանուն Սիմէոն քահանայ[ի]: Որք հանդիպիք սմա կարդալով կամ հարկանցի տեսանելով, յիշեսջիք ի սուրբ յաղօթս ձեր ըզծրող սորին եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն:

14(9)

ՔԱՀԱՆԱՅԱԹԱՂ

Սուչավա ՌՃԺԲ — 1663 թ.

Գրիչ՝ Աղարիա կղերիկոս: էջ՝ 346: 21,2×16,8: Թուղթ: Բոլորագիր: Միասյուն: Տողեր՝ 19: Մանրանկարչություն՝ Կիսախորան, լուսանցազարդ և զարդագիր (բուսական մոտիվներով):

Սկ. [Կ]անոն յորժամ ննջեցեալս կամ քահանայ կամ հայրապետ կամ ուխտի առաջնորդ կատարի մահուամբ....

Տէր, ապաւէն մեր եղեր մինչև յազգ...

Հիշատակարան գրչի

էջ 337 Եւ յիշատակարան սուրբ գրոցս:

Փա՜ռք... Արդ գրեցաւ սուրբ տառս, որ մակագրեալ Քահանայաթաղ կոչի, ձեռամբ յոգնամեղ և անարժան սուտանուն Աղարիայի կղերիկոսի, որ զանուն անիմ և զգործս ոչ: Բայց գրեցաւ սա ի յաշխարհս Պողդանաց, ի քաղաքս Սէչաւ, ընդ հովանեաւ և բարձրահայեաց հրեշտակաց տաճարիս Սուրբ Միքայէլի: Եւ ի կաթողիկոսութեան Հայոց Սուրբ Էջմիածնա տեառն տէր Յակոբին, և առաջնորդութեան յայսմ գաւառի տէր Սահակ արքեպիսկոպոսին, և ի

*թվականութեանս Հայոց, ՌՃԺԲ (1663) ամին, մարտի ամսոյ ԺԷ (17)-ին։*

*(Ձեռագրի սկզբում և վերջում կան զանազան նշումներ, որոնցից մի քանի տող բերում ենք ստորև իբրև նմուշ)։*

*Եղաւ աղբար սովատուրինը*
*ՃՄ օխայ պաշխայ պասնը Է (7) պաշպայ Ը (8),*
*...Եղաւ Մանուկինը Ճ ու ԺԵ,*
*պշխ(այ) ճալ-պշխ ԺԶ։*

15(49)

## ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ՎԻՃԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ ՈՄԱՆՔ, ՈՐՔ ՊԱՏԿԱՆԻՆ ԱՌ ԳԻՏՈՒԹԻՒՆ ՄԵՏԱՖԻԶԻԿԱՅԻՆ, ՈՐ ԹԱՐԳՄԱՆԻ ՀԱՄԱՌՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ [Շ]ԱՐԱԿԱՐԳԵԱԼՔ Ի ԿԱՐԳԷ ԹԷԱՏԻՆՈՒՈՑ ԿՂԵՄԷՍ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԷ

*Լվո՞վ* *ՌՈՁ՞Բ—168՞2*

Թերթ՝ *228։ 20,2×16։ Թուղթ։ Միասյուն։* Տողեր՝ *29 և այլն։*

Հիշատակագրություն

*34բ* *Լատին Թ.ՌՈՁԲ (1682) Հունվարին յաւուր Բ(2)։*

16(73)

## ՏՕՆԱՑՈՅՑ ԵՒ ՊԱՐԶԱՏՈՒՄԱՐ

*Լվով* *ՌՃԼԳ—1684 թ.*

Գրիչներ՝ *Արապկիրցի Սարգիս փաքրաւոր և Թոխաթցի Սարգիս եպիսկոպոս։ Թերթ 223։ 9,8×7,8։ Թուղթ։ Բոլորագիր։ Միասյուն։* Տողեր՝ *15։*

Հիշատակարան և հիշատակագրություններ

Գրիչների

Ա

*160բ* *Գրեցաւ Տօնացոյցս և պարզատումարս և փոքրիկ աղօթից գըրկիկս ձեռամբ յԱրապկիրցի մեղաւոր Սարգիսըս։ Ո՛վ որ հանդիպի Ա(1) հայր մեղայիւ յիշէ աստուած զինքն վերին արքայութեան յիշեալ լիցի։ Ամէն։*

Բ

*220ա* *Գրեցաւ Պարզատումարս ձեռամբ Թոխաթցի Սարգիս եպիսկոպոսիս, թվին Հայոց ՌՃԼԳ (1684) ի մայրաքաղաքն Լով։*

Գ

*Շնորհեցի յԱրապկիրցի Սարգիս փաքրաւորիս բարով վայելէ, ամէն։*

Գ

Այլ ձեռաց

*1176(1727)-ին հայոց շինեցի զմեղրզըս, մեռաւ տէր Յակոբը մայիսի ԺԱ(11)։*

Ե

*Գրեցաւ գիրքս ան տարին, որն որ էլան հայերըն ի թագաւորութեան Միհայը պա(շահին)¹ ժամանակին, ի քաղաքըն Ճաչովըն (իմա՝ Սուչավա), թվին ՌՃԾԳ (1704) ամսոյն անիվարի ԻԲ (22) օրն երկուշաբթի։*

(Կա նաև պաշտոնական ռումիներեն մի գրվածք)

17(51)

*ԺՈՂՈՎԱԾՈՅ*

*Ջուրջո՞վ* *ՌՃԼԴ—1685 թ.*

*19×15,5։ Թուղթ։ Նոտրգիր։ Միասյուն։* Տողեր՝ *16։*

Հիշատակագրություն

Գրչի՝

*Ի թվոյն Քրիստոսի ՌՃԼԴ, 1685 մարտի ԻԵ, 25։*

Հետագայի

*1776-ին անիսի 1-ին հանգաւ ի տէր /// ողորմած հոգի աղ[աչայ] Գասպար Մնացուկի՝ Նիկոլի, վարվ[ո]ր կարգայ, նայ մէկ հար մեր զՔրիստոս իշէ գինըը. և էր 76 տարեկան հանգըստեան ժամանակը։*

*Մէրավ մաման 1777 աէձէնգէրի 7-ին /// աղ[աչայ] Գասպարի Մնացուկի։*

18(29)

*ԳԱԹԷԽԻԶՄՆ ՀՌՈՄԵԱԿԱՆ ԵՒ ՑՈՒՑԱԿ ԱՒԵՏԱՐԱՆԱՑ ԿԻՐԱԿԷԻՑ*

*Լէօպոլիս* *ՌՃԽԶ՞—1697՞ թ.*

*Էջ 440+24։ 32×20։ Թուղթ։ Նոտրգիր։ Միասյուն։ Կաշեկազմ։*

Հիշատակարան-հիշատակագրություն

Ա

Գրչի՝

*Գաթէխիզմն Հռոմեական, այս է վարդապետութիւն իրաց սրբա-զանից ըստ վճռոյ, Սրբազնասուրբ ժողովոյն Տրիդենտինեայ, Հրա-*

¹ *Խոսքը վերաբերում է Միհայ Ռակովիցային, որը երեք անգամ իշխան է դարձել Մոլդովայի և երկու անգամ էլ՝ Վալախիայի (1703—1727 թթ.)։*

մանաւ Փիլոսի Եւերարդի քահանայապետին ծայրագունի, պարզաբեցեալ յամի տեառն ՌՇԿԶ (1566). յետ այնորիկ ի գլուխս և ի խնդիրս բաժանեցեալ իսկ և զանազանաց Սրբոց Հարց զգացմամբք և երկաքանչիւրոց Թէ նորոյ և Թէ Հնոյ կտակի հեղինակութեամբք ի լուսանցս փաղանշանեցեալ: Որում են ցուցանք երկու վերայաւելեցեալք, մին այնց իրաց, որք ի բոլորում գրքի աստ պարունակին: Միւսն այնց, որք առ Աւետարանս կիրակէից և առ տօնս սրբոց պատկանին կարեն, վասն դիւրութեան Հոգաբարձուաց քահանայից: Թարգմանեցեալ ի Հայկական բարբառ, յամի տեառն ՌՈՂԷ (1697) ի Լէօպօլիս՝ ի փառս մեծազօրին Աստուծոյ:

Բ

էջ 1 Ի գրեանց Տ. Յօհաննու Մխիթարայ Յովհաննեան 1730, 40 պա.

Գ

Բ. մաս. էջ 19 Ի գրեանց բազմաշխատ տեառն Յօհաննու Մխիթարեան Էրզրումեցւոյ վարդապետի և առաքելական միսիոնարի:

Դ

էջ 24 Յամի տեառն 1732 եկի ի յՄիւլլերեան և սկսայ քարոզել Յունվարի 1 մահի ի նոյն քաղաքին:
(Բովանդակութիւնը տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1914 թ., էջ 667—670):

19(20)

## ՏԱՐՆԱՑՈՅՑ ԵՒ ԱՒԵՏԱՐԱՆԱՑՈՅՑ ԵՒ ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՀՐԱՀԱՆԳՔ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ՏՕՆԻՑ

ԺԷ դար

15,1×9,3: Թուղթ: Նոտրագիր:

20(25)

## Ս Ա Ղ Մ Ո Ս Դ Ա Վ Թ Ի

ԺԷ դար

Գրիչ՝ Մարկոս: Ստացող—Յակոբ պատրիարք Ջուղայի: էջ 440: 13×10: Թուղթ: Բոլորագիր: Միասյուն: Տողեր՝ 16 և այլն: Մանրանկարչություն՝ Գլխազարդ, լուսանցազարդ և զարդագիր:

Հիշատակարան

էջ 240 Հանգիստպաշտաց և վայելչաշաղաց յայսմ աստուածարեալ սեղանոյս, աղաչեմ յիշել զստացող սորին զՅակոբ պատրիարք Ջուղայի սպասաւոր տեառն Փիլիպոսի և Յակոբայ սրբազան կաթողիկոսացս: Ընդ նմին և զիս զգծող սորին բազմամեղ Մարկոս բանի սպասաւոր եւ յիշեցէք:

